կուսակցութիւնը։ Այդ թուականին պիտի տօնուի Թրանսիլվանիոյ կցման տասնամեայ տարեդարձը։

Կարգը պահպանելու համար խիստ միջոցներ ձեռք առնուեցան։ Կը կարծուի թէ իշխանութեան գլուխ պիտի գայ Ավէրէսքու - Եորկա կառավարութիւն մը։

## Զօր. Փանկալոս կրկին ձերբակալուած

Աթէնքէն կը հեռագրեն թէ ոստիկանութիւնը առջի իրիկուն ձերբակալած է նախկին դիկտատոր զօրավար Փանկալոսը այն ցոյցերուն պատճառաւ, որոնք ընտրութիւններէն առաջ տեղի ունեցան Փանկալոսեան ակումբին առջեւ։ Ինչպէս կը յիշուի, այդ ցոյցերու ընթացքին, Փանկալոս եւ իր թիկնապահը զէնք պարպած էին ցուցարարներուն վրայ, վիրաւորելով քանի մը հոգի։

## Հուվը՞ր թէ Սմիթ

Քանի օրերը կը մօտենան, ա՛յնքան կը սաստկանայ ընտրական պայքարը Ամերիկայի մէջ։ Մինչեւ վերջին վայրկեանը հասած հեռագիրներու համաձայն Հանրապետականներու թեկնածու Հուվըր մեծ պատեհութիւն ունի ընտրուելու։ Եթէ Սմիթ ընտրուի, հրաշք մը պիտի ըլլայ, կ՚ըսեն։

## Տրոցկիի նոր գիրքը

Պերլինէն կը հեռագրեն.— Տրէզտէնի (Գերմանիա) հրատարակչական մէկ տունը յառաջիկայ շաբթու պիտի հրատարակէ Տրոցկիի մէկ գիրքը՝ «Ռուսիոյ իրական կացութիւնը» անունով եւ գերմաներէն լեզուով։

Կ՚ըսուի թէ գիրքը գաղտնի տպագրուեցաւ Ռուսիոյ մէջ, սակայն անմիջապէս գրաւուեցաւ եւ հրատարակիչները ձերբակալուեցան։ Սակայն կարելի եղաւ մէկ օրինակ ազատել եւ հասցնել Գերմանիա, ուր թարգմանուեցաւ։ Այդ գիրքին մէջ Տրոցկի կ՚ապացուցանէ թէ ներկայ բոլշեւիկեան վարչաձեւը իր վախճանին կը մօտենայ։

## Զօր. Թաունզհէնտ դաւաճան էր

Լոնտոնի մէջ քանի մը օր առաջ հրատարակուեցաւ գիրք մը՝ զօրավար Թաունզհէնտի մասին։ Ինչպէս կը յիշուի, անգլիացի զօրավարը Քութ-էլ-Ամարայի (Միջագետք) մէջ պաշարուեցաւ թուրք բանակին կողմէ եւ գերի ինկաւ իր պահակազօրքով։ Յետոյ Պոլիս բերուելով գործօն դեր կատարեց Մուտրոսի զինադադարին ստորագրութեան ատեն եւ Անգլիա վերադառնալով կատաղի թրքասէր մը դարձաւ մինչեւ իր մահը, որ տեղի ունեցաւ քանի մը տարի առաջ։

Նոր գրքին հեղինակը յայտնութիւն մը կ՚ընէ։ Կ՚ըսէ թէ երբ զօրավարը Լոնտոն վերադարձաւ, պատերազմական նախարարութիւնը մերժեց աստիճանի բարձրացում շնորհել իրեն, որովհետեւ ձեռք անցուցած էր զօրավարին մէկ նամակը՝ գրուած Սէրայէվոյի ոճիրէն յետոյ Փարիզի աւստրիական զինուորական կցորդին, որ իր բարեկամն էր, եւ որով կ՚առաջարկէր ծառայել աւստրիական բանակին մէջ, քանի որ Անգլիոյ մէջ աստիճանի արագ բարձրացում չէր ունենար։

Աւելցնենք թէ թրքասէր զօրավարը հրէական ծագում ունէր։

## Նոր շէնք մըն ալ փլաւ

Վիէնսէնի աղէտին պատճառած յուզումը հազիւ անհետացած, ահա նոր շէնք մըն ալ կը փլի, Փարիզի սրտին վրայ։ Ուրբաթ իրիկուն ժամը 8.40ին ահռելի որոտումով մը փլաւ հսկայ շէնք մը՝ Շան զ՚Էլիզէի պողոտային եւ Քանթէն-Պօշար փողոցին մէջտեղ, որ սահմանուած էր թատրոն մը ըլլալ եւ որուն շինութիւնը գրեթէ աւարտած էր։ Թատրոնին տնօրէնը պիտի ըլլար թատերագիր Լուի Վէրնէօյլ։

Աղէտին լուրը իմանալուն պէս, վարչապետ Փուանքարէ փութաց տեղւոյն վրայ, ուր հասան նաեւ ոստիկանական իշխանութիւնները, որոնք շղթայի տակ առին փլատակները։ Բարեբախտաբար բանուորները մեկնած էին եւ երկու պահակները յաջողած էին ազատուիլ։ Որով զոհ չկայ։ Եթէ աշխատութեան ժամերուն փլէր շէնքը, 120 հոգի պիտի մնային փլատակներուն տակ։ Փլած է շէնքին մէկ երրորդ մասը միայն, որ սիման-արմէ էր։ Իսկ երկու երրորդ մասը քարէ շինուած ըլլալով, անվնաս մնացած է։

## Հրեաները ժողով կը բողոքեն

«Թայմզ»ի թղթակիցը կը հեռագրէ.—

Երուսաղէմի Սիոնական Գործադիր Մարմինը բողոք մը ուղղեց Սողոմոնի տաճարին ծանօթ պատին առջեւ Հրեաներու կրօնական արարողութիւնը արգիլուելուն առթիւ։

Հրեաներուն այս աղմուկին դէմ զայրացած են Արաբները։ Արաբական մամուլը հակահրէական քարոզութիւններ կ՚ընէ։

Նոյեմբեր 1ին կէսօրէ յետոյ իսլամները միթինկ մը գումարեցին, որոշելու համար թէ ի՛նչ քայլեր պէտք է առնեն որպէսզի արգիլեն իսլամական ամենանուիրական սրբավայրին դէմ Հրեաներու ձեռնմխութիւնը։

---

ՕՐ. ԲԵՐԿՐՈՒՀԻ ԲԻԼԻՃԵԱՆ

ԵՒ

ՄԱՆՈՒԷԼ ԷՆՔՍԷՐՃԵԱՆ

ՆՇԱՆՈՒԱԾ

Փարիզ 4 Նոյ. 1928 Կիւմիլճինա

---

Արմենակ Սարեան եւ իր զաւակը սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ կողակցին եւ մօր՝

**ՏԻԿ. ԱՏՐԻՆԷ ՍԱՐԵԱՆԻ**

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ յետ երկարատեւ հիւանդութեան, Հոկտ 30ին, Fains-les Sources (Meuse): Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ եւրոպական ծէսով Նոյեմբեր 1ին եւ հանգուցեալոյն մարմինը ամփոփուեցաւ տեղւոյն գերեզմանատան մէջ:

---

ԱԶԴ

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Հ.Կ. ԽԱՉԻ

Կ. Վարչութիւնը պատիւ ունի յայտնելու ի գիտութիւն հայ հասարակութեան, որ համաձայն պատգամաւորական ժողովի որոշման իր մասնաճիւղերը ձեռնարկած են տարեմուտի երեկոյթներ տալու առաջիկայ Դեկտեմբեր 31ի գիշերը Մարսիլիոյ Փարիզի, Լիոնի, Վալանսի, Տեսինի, Վիէնի, Կրընոպլի և Կարտանի մէջ։

Խաչաձեւումները կանխելու համար կը խնդրենք յիշեալ վայրերու ազգային կազմակերպութիւններէն նկատի առնել այս յայտարարութիւնը։

Ա. Ե. Հ. Կ. Խ. Կ. Վարչութիւն

---





## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Օննիկ եւ Մարի Անճարակեան կը փնտռեն իրենց եղբայրը Էնգարէցի Ճօրճի Անճարակեան (34 տարեկան), որ ընդհանուր պատերազմին անյայտացած է։ Իմացնել՝ Օ. Անճարակեանի, 3 Rue des Enfants Abandonnés, Marseille.

— Կը փնտռեմ կարապետ Սուքիասեան (որդին՝ Սկիւտար Ս. Կարապետ եկեղեցւոյ քահանայ հանգուցեալ Ղեւոնդ Տէր Սուքիասեանի) որ 16 տարիէ ի վեր Ֆրանսա կը գտնուի: Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Թերթիս գրաշարներէն՝ Հրանդ Սրապեանի:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

նը, որուն ներկայ եղան միայն քուրմեր եւ կայսերական գերդաստանի անդամներ։

Մօտ հինգ միլիոն հոգի փութացին ծնրադրելու թափօրին առջեւ, երբ տաճարէն դուրս ելլելով, կ՚անցնէր յաղթական կամարներուն տակէն եւ կը շրջէր Թոքիոյի գլխաւոր փողոցներուն մէջ։

Եւ որպէսզի ո՛չ ոք աւելի բարձր գտնուի կայսրէն, մարդ չկրցաւ պատուհաններէն նայիլ կամ տանիք բարձրանալ դիտելու համար։ Կայսրը՝ հնօրեայ զգեստներ հագած և գլխուն՝ մեծ քուրմին չալթայ-թագը դրած, նստաւ կառքի մը մէջ։ Կայսրուհին, գահաժառանգը և անոնց հետեւորդները հետեւեցան կառքին։ Կայսրը այս թափօրով գնաց Շիշէնտէն, տեսակ մը տաճար, հոն կարդալու համար իր ճառը, ազնուականներու եւ դիւանագիտական ներկայացուցիչներու առջեւ։

Անկէ յետոյ Միքատոն գնաց բրինձ նուիրելու աստուածներուն։ Քահանաներէն զատ, ուրիշ ո՛չ ոք կրցաւ ներկայ գտնուիլ այս արարողութեան։ Քանի մը օր յետոյ, ուրիշ արարողութիւն մըն ալ տեղի կ՚ունենայ։ Կայսրը կ՚այցելէ իր նախնիքներու դամբանները, որմէ յետոյ, նոր թափօրով կը վերադառնայ Թոքիօ, ուր իրեն կը յանձնուին խորհրդանշանները։ Անկից վերջ միայն կրնայ զբաղիլ իր սովորական գործերով։

## «Լքեալ» գոյքերու աւարը

Էնկիւրիի եւմտական գործավարութեան կողմէ տրուած հրամանին վրայ, Պոլսոյ «լքեալ» Գոյքերու Վարչութիւնը վաճառման գործողութիւններուն սկսած է դարձեալ։ Այս առթիւ, իբր առաջին վաճառում, աճուրդի դրուած է Սիրքէճիի մէջ գտնուած խան մը, ուրկէ վերջ ուրիշներ ալ ծախու պիտի հանուին։

Ծախու պիտի հանուին այն կալուածները, որոնք գաղթականներու բնակութեան չեն յատկացուած։ Մինչեւ հիմա այս կարգի 150 կտոր շէնքեր ցուցադրուած են, բայց հետզհետէ պիտի աւելնան ծախուելիք կալուածներու քննութիւնները աւարտելէ վերջ։ Ասկէ վերջ գաղթականներու տրուած եւ յետոյ մէջտեղ ելլելիք «լքեալ» գոյքերը գաղթականներուն պիտի չտրուին, այլ պիտի ծախուին իբր պետական գանձին սեփականութիւնը։

## Գործադրկութիւնը Անգլիոյ մէջ

Անգլիոյ Երեսփ. Ժողովը իր առջի օրուան նիստը ամբողջովին նուիրեց գործազրկութեան տագնապին, որ երկար ատենէ ի վեր կը տիրէ Անգլիոյ մէջ։

Վիճաբանութիւնները բացաւ Ֆիլիփ Սնօուտըն, յանուն Աշխատաւորական կուսակցութեան։ Ընկերվարականներու տեսակէտն այն է որ հանքերու ազգայնացումը պիտի մղէ աւելի գիտականօրէն շահագործել ածխահանքերը եւ թէ օրական 7 ժամուան աշխատանքի դրութիւնը գործադրելով, կարելի կ՚ըլլայ գործ հայթայթել 70,000 բանուորներու, որոնք անգործ կը մնան մօտ երկու տարիէ ի վեր։

Յետոյ խօսք առաւ Լոյտ Ճորճ, քննադատելով կառավարութիւնը թէ լրջօրէն նկատի չէ առած տագնապին ծանրութիւնը։ Նախկին վարչապետը ըսաւ նաեւ թէ պահպանողական կառավարութիւնը խիստ ծանր սխալ մը գործեց՝ առանց ո և է պատճառի, անմիջապէս ոսկեդրամի դրութեան վերադառնալով։

Աշխատանքի նախարարին կարճ մէկ պատասխանէն յետոյ, վիճաբանութիւնը յետաձգուեցաւ երկուշաբթի օրուան։

## Լիտվինոֆի եղբայրը խաչագող

Պերլինի թերթերը մանրամասնութիւններ կուտան դրամաշորթական արարքի մը մասին՝ կատարուած ի վնաս Պերլինի խորհրդային առեւտրական ներկայացուցչութեան, մեղսակցութեամբ արտաքին փոխ-գործավար Լիտվինոֆի եղբօր։ Շրջաբերութեան հանուած են չորս միլիոն մարք արժէքով կեղծ փոխանակագիրներ՝ Պերլինի առեւտրական ներկայացուցչութեան ստորագրութեամբ։

Վերջերս Փարիզ եկան Պերլինցի փաստաբան մը, ներկայացուցիչ խորհրդային կառավարութեան՝ ընկերակցութեամբ Պերլինի գաղտնի ոստիկաններէն մէկուն, որովհետեւ կը կարծուէր թէ Լիտվինոֆ Փարիզ կը բնակի։ Հասկցուեցաւ սակայն թէ Լիտվինոֆ փախած է Փարիզէն եւ Պելճիքա ապաստանած։ Ձերբակալման հրամանագիր հանուեցաւ իրեն դէմ։

Լիտվինոֆ, որ մինչեւ 1926 յուլիս 1, Պերլինի մէջ խորհրդային առեւտրական ներկայացուցչութեան վարիչն էր, բազմաթիւ կեղծ մուրհակներ ստորագրած է՝ հին թուականներով։ Այս մուրհակները ծախուած են մանաւանդ Ֆրանսայի մէջ։ Զոհերը վնասուց հատուցում պիտի պահանջեն Մոսկուայի կառավարութենէն։




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

որ սպառազինութեան ճամբուն մէջ շարունակենք. Ազգերու Դաշնակցութիւն, Լոքառնօ, Քէլլոկի դաշինք պարզ գաւեշտ ու զուարճալիք պիտի մնան։ Եւրոպայէն մինչեւ նախագահ Քուլիճ սպառազինութիւնը կը շարունակուի։ Սպասենք որ Լոքառնօն փորձի ենթարկուի՝ երբ Գերմանիա իրաւարարութիւն պահանջէ հոհենոսեան խնդրին համար։ Ատիկա ճշմարիտ փորձաքար մը պիտի կազմէ։»

Անգլիոյ նախկին վարչապետը յետոյ խօսելով Ֆրանսայի մասին, ըսաւ թէ այսօր Ֆրանսա չորս անգամ աւելի սպառազինուած է քան Գերմանիա 1914ին։

— Ու մենք նաւային դաշինք կնքած ենք Ֆրանսայի հետ։ Կ'ըսեն թէ այդ դաշինքը մեռած է հիմա, սակայն կը մնայ այն իրողութիւնը թէ ստորագրած ենք համաձայնագիր մը, որով բացէ ի բաց կ'ընդունինք չգործադրել դաշնագիր մը։ Կ'ըսեն նաեւ թէ այդ դաշինքը իրաւարարութիւն մըն էր։ Անունը կարեւոր չէ. իրողութիւնն այն է որ այդ համաձայնագիրը վտանգած էր մեր ապահովութիւնը եւ աշխարհի խաղաղութիւնը։

«Կառավարութիւնը կը հաւաստէ թէ Ֆրանսայի եւ Գերմանիոյ հետ մեր յարաբերութիւնները լաւ են, բայց ի՞նչ ըսել Միացեալ Նահանգներու հետ մեր յարաբերութեանց մասին։ Ասիկա կը մտատանջէ զիս։

## Օտարականներու մուտքը Անգլիա

Անգլիոյ Երեսփ. Ժողովին մէջ առջի օր աշխատաւորական Լէնսպէրի ներկայացուց բանաձեւ մը՝ պահանջելով որ օտարականներուն Անգլիա մուտքը սահմանող օրէնքը չերկարաձգուի։ Լէնսպէրի ամբաստանեց Ներքին Նախարարը թէ իբրեւ դիկտատոր կը վարուի անգլիահպատակ չեղողներու հանդէպ։

Իր պատասխանին մէջ, Ներքին Նախարար Սըր Ուիլեըմ Ճօյնսըն Հիքս յայտարարեց թէ գործազրկութեան պատճառաւ օտարական մը չի կրնար աշխատիլ Անգլիոյ մէջ, առանց արտօնագիր ստանալու աշխատանքի նախարարէն։ Գալով յեղափոխական օտարականներու մասին իշխանութեանց բռնած դիրքին, խնդիր է թէ անոնք ո՛ր դասակարգերուն կը պատկանին։ Ըստ Նախարարին, երկու տեսակ անբաղձալի օտարականներ կան. անոնք որ օտար երկրի մը դէմ յեղափոխական ձեռնարկներու կը լծուին, եւ անոնք որ կուգան՝ Անգլիոյ դէմ դաւադրելու համար։

— Առաջիններուն օձիքէն բռնելով իրենց երկիրը կը վերադարձնենք։ Գալով միւսներուն, շոգենաւէն դուրս չեն հանուիր անոնք, կամ կ'աշխատինք որ այդպէս ըլլայ։

Վերջացնելով, Նախարարը ըսաւ թէ 1923ին 3173 օտարականներու արգիլուեցաւ ցամաք ելլել։ Այդ թիւը հետզհետէ նուազելով, 1927ին իջաւ 2092ի։

Ի վերջոյ, մերժուեցաւ աշխատաւորականներու բանաձեւը։

## Փօլ Պոնքուր հրաժարեցաւ

Երէկ գրած էինք թէ ընկերվարական երեսփոխան Փօլ Պոնքուր մտադրած է հրաժարիլ Ազգերու Դաշնակցութեան մօտ ֆրանսական պատուիրակի իր պաշտօնէն։

Փօլ Պոնքուր արդէն իսկ ղրկած է իր հրաժարականը արտաքին Նախարար Պրիանի։ Իր նամակին մէջ, ընկերվարական երեսփոխանը կ'ըսէ թէ ինք այդ պաշտօնը ստանձնած էր՝ երբ իշխանութեան գլուխ կը գտնուէին ձախ տարրերը յետոյ ալ «ազգային միութեան» դահլիճը։ Հիմա որ դրամական կայունացումէն վերջ կուսակցութիւնները վերստին իրենց անջատութիւնը գտած են, նոր դահլիճ կազմուած է առանց ձախ տարրերու գործակցութեան, եւ թէ այս վերջինները դարձեալ ընդդիմադիրի դերին մէջ մտած են, իր այդպիսի պատասխանատու պաշտօնի մը մէջ մնալը պատշաճ չպիտի ըլլար թէ՛ իր կուսակցութեան եւ թէ ներկայ կառավարութեան համար։

## Ինչո՞ւ փակուեցաւ Իզմիրի փրանս. դպրոցը

Երէկ գրած էինք թէ Թուրք կրթական գործավարին հրամանով փակուած է Իզմիրի ֆրանսական աղջկանց վարժարանը՝ Նոթր Տամ տը Սիոն։

Լրացուցիչ տեղեկութեանց համաձայն, դպրոցը փակուած է այն պատճառաւ, որ հակառակ կրթական գործավարութեան պաշտօնական ազդարարութեան՝ պահուած են այն երեք ուսուցչուհիները, որոնք ամբաստանուած էին թէ կրօնական քարոզութիւններ կ'ընեն։

Տէյլի Մէյլ»ի Պոլսոյ թղթակցին համաձայն, Իզմիրի ոստիկանութիւնը՝ կրթական գործավարին հրամանին վրայ՝ դպրոցէն բռնի դուրս հանած է 220 աշակերտուհիները։



Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ԺՈՂՈՎԻ
կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի խումբերու եւ կոմիտէներու ներկայացուցիչները վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 8ին Café Chope Parisienneի վերնայարկը, 60 Rue des Ecoles.



Հ. Յ. Դ.

Ցեսինի Քրիստափոր խումբի ժողովը՝ վաղը Բշ. ժամը 2ին, նախորդ ժողովի վայրը։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY

բականութիւնը խեղճ ասպարէզ մըն է, ուր վճարումը քիչ է և շահ չկայ։ Գործակալներուն պաշտօն տրուած է նաեւ վրիժառութեան ոգի ներշնչել պալքանեան բանակներուն մէջ։ Եթէ ոեւէ սպայ կամ զինուոր փափաք յայտնէ աջակցիլ խորհրդային գործակալներուն, անմիջապէս նիւթապէս պիտի վարձատրուի։

Զինուորական շրջանակներու մէջ կը յայտարարեն թէ 1928ի ամառը բոլշեւիկները մեծ զարկ տուած են իրենց գործունէութեանց։ Պատճառն է՝ մասամբ Եուկոսլաւիոյ եւ Ալպանիոյ ձգտումը, ինչպէս նաեւ սերպախրուաթ կռիւը եւ Մակեդոնացիներու եղբայրասպանութիւնը Պուլկարիոյ մէջ։ Խորհրդային կառավարութիւնը պատրաստ է գրգռել անկարգութիւնը, հոն ուր արդէն կայ, ու բոլշեւիկները փորձով գիտեն թէ պալքանեան կիրքերը կը բռնկին դիւրաւ երբ ցեղային ատելութիւնը կը գործէ։

Հաւանական չէ որ Ընկիւրիի խորհրդային դեսպանատունը մաս ունենայ բոլշեւիկներու Պոլիս կատարած մեքենայութեանց մէջ։ Եւ իրաւ ալ հաւանական է որ Մոսկուա դիտումնաւոր կերպով դեսպանատունը անտեղեակ կը պահէ Գ. Միջազգայինի արարքներէն։ Խորհրդային կառավարութիւնը իր դիւանագէտները մութին մէջ կը պահէ՝ որովհետեւ կը կարծէ թէ անցեալին մէջ կարեւոր գաղտնիքներ դուրս հանուած են դիւանագիտական խողովակներով։

Յայտնի կ'երեւայ որ քարիւղի եւ այլ պետական մենաշնորհի վերածուած նիւթերու վաճառումէն գոյացած դրամին մեծ մասը սահմանուած է պրոպագանդայի եւ մեքենայութեանց։ Մոսկուա այս ձեւով այլեւս պէտք չունենար օտար երկիրներ դրամ փոխադրելու, բան մը, որ ժամանակին պատճառ դարձաւ երեւան հանելու բոլշեւիկեան գործակալները։ Ասկէ զատ, խորհրդային մենաշնորհներու պաշտօնեաները յաճախ գործակալի դեր կը կատարեն, որովհետեւ իրենց դիրքին բերումով շփում կ'ունենան կարեւոր մարդերու հետ։

## Անթել եւ օդանաւ Աֆղանիստանի մէջ

Քապուլէն կը հեռագրեն թէ ներքին նախարարութեան կից բացուած է ճարտարագործութեան պաշտօնատուն մը, որուն գործը պիտի ըլլայ պատրաստել ամբողջ երկրին ճամբաներուն քարտէսը։ Նախնական կարգադրութիւններ եղած են ֆրանսական եւ գերման ընկերութեանց հիւսիսի եւ հարաւի կողմը երկաթուղիներ շինելու համար։

Նոյնպէս պատրաստութիւններ կը տեսնուին անթելով հաղորդակցելու համար եւրոպական երկիրներու հետ եւ օդանաւային սպասարկութիւն հաստատելու համար Աֆղանիստանի, Պարսկաստանի եւ Թուրքիոյ հետ։ Օդանաւային ընկերութիւն մը կազմուեցաւ հանգանակութիւն կատարելու եւ զարկ տալու համար քաղաքային օդանաւորդութեան։

## Մակեդոնիոյ եղբայրասպան կռիւները

Սոֆիայէն կը հեռագրեն.— Սոպրանիէի մէջ գահաճառին մասին կատարուած վիճաբանութեանց ընթացքին, նախկին վարչապետ Մալինոֆ խօսեցաւ երկար ճառ մը, ակնարկելով նաւում Պէլէֆի սպանութեան։ Սոֆիայի նախկին ոստիկանական տեսուչը ջերմ կուսակիցներէն էր զօրավար Փրոթոկէրոֆի, եւ հակառակ էր որ Մակեդոնիոյ Յեղափոխական կազմակերպութեանը ղեկը անցնի Իվան Միխայլոֆի ձեռքը։

Մալինոֆ դատապարտեց մակեդոնական սպանութիւնները, որոնք, ըսաւ, գործադրութիւնն են յեղափոխական վճիռի մը եւ ոչ միայն մեծապէս կը վտանգեն պուլկար պետութեան գերիշխանութիւնը, այլ նաեւ կը վնասեն նոյնինքն յեղափոխական շարժումին, որ ազգային շարժում մըն է։ Իշխանութիւնները չեն կրնար անտարբեր մնալ գործունէութեանցը հանդէպ գաղտնի կազմակերպութեանց, որքան ալ ազնիւ ըլլան անոնց հետապնդած նպատակները։

Սակայն, շարունակեց, որովհետեւ Մակեդոնական շարժումը խոր համակրութիւն կը վայելէ Պուլկարներու մէջ, կառավարութիւնը պէտք է նկատի առնէ այդ պարագան, ու մինչ մէկ կողմէ խստիւ կը գործադրէ պուլկարական օրէնքները, միւս կողմէ պէտք է զգուշանայ կոպիտ զսպումէ, ինչպէս խորհուրդ կուտան Մակեդոնական յեղափոխական կազմակերպութեան թշնամի շրջանակներու մէջ։

Մալինոֆ թելադրեց բոլոր անոնց որոնք անկեղծօրէն կը փափաքին որ իրական խաղաղութիւն տիրէ Պալքաններուն մէջ, օգնել Պուլկարիոյ՝ ձեռք առնելով յարմար միջազգային միջոցներ, որոնք օրինաւոր գոհացում տալով ազգային շարժումին, վերջ պիտի դնեն պուլկար փոքրամասնութեանց գանգատներուն։

Մալինոֆ ակնարկեց անցեալ Սեպտեմբերին Ժընեւի մէջ Պրիանի խօսած ճառին փոքրամասնութեանց մասին եւ յայտարարեց թէ Պուլկարիա կը փափաքի միայն Պրիանի ծրագրին գործադրութիւնը, առանց որեւէ փոփոխութեան ենթարկելու այն դաշնագիրները, զորս ուղղամտօրէն կը գործադրէ։

## Ֆաքիրին գոյքերը գրաւուած

Ֆաքիր Թահրա պէյի Թրոքատէրոյի ներկայացման կազմակերպիչը Ռոզ որաւել տուած է ֆաքիրի սենեակին մէջ գտնուած գոյքերը, այն առարկութեամբ որ նոյեմբեր 21ի իրիկունը չէ խաղացած, հակառակ պայմանագրութեան։

Թահրա պէյ դատ բացած է Ռոզի դէմ, պատճառաբանելով որ նոյն օրը հաղորդած է իրեն հիւանդութիւնը եւ առաջարկած որ ներկայացումը յետաձգուի դեկտեմբեր 2, կիրակի իրիկուան։

## Գերմանիոյ ծանուցագիրը դաշնակիցներուն

Ինչպէս կը սպասուէր, Գերմանիա առջի օր դաշնակից կառավարութեանց յանձնեց ծանուցագիր մը, պարզելով իր տեսակէտները փորձագէտներու միջազգային յանձնաժողովին մասին։ Փարիզի գերման դեսպան ֆոն Հէօշ ծանուցագիրը անձամբ յանձնեց վարչապետ Փուանքարէի, որուն, ինչպէս նաեւ արտաքին նախարար Պրիանի հետ տեսակցեցաւ։

Կը կարծուի թէ Գերմանիա դաշնակիցներուն բոլորովին հակառակ տեսակէտ կը պաշտպանէ հատուցումներու, Հռենոսեան գաւառներու պարպումի եւ յարակից խնդիրներու մասին։

### «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ» ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այսօր կէսօրէ վերջ ժամը 2.30ին Յունաց եկեղեցիին մէջ, 17 Rue Boyard: Մուտքը ազատ է։

### Հ. Յ. Դ.

Փարիզի Քրիստափոր խումբի ժողովը վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 8ին Café Chope Parisienneի մէջ, Rue des Ecoles.

Լիոնի Կուկունեան խումբի ժողովը՝ վաղը երկուշաբթի իրիկուն ժամը 8ին նախորդ ժողովի տեղը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

Լիոնի Քեռի խումբի դասախօսական ժողովը՝ այս Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գ. Թաղապետարանի ժառենազարանի սրահը։ Նիւթ՝ Հայկական շարժման նախապատմութիւնը։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔԸ այսօր Կիրակի առաւօտ ժամը 10.30—12 Ֆրանսերէն (Պ. Դաւիթ-Բէկ)։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Պրուսացի Ջատիկ Համբարձումեան որ երկու տարի առաջ եկած էր Յունաստանէն Ֆրանսա։ մէկ տարի առաջ կը գտնուէր Լիոն եւ կը թղթակցէր։ Իմացնել իր հասցէն Շապին գարտիզիստրցի Լեւոն Մուրատեանի, Rue de la Baleine. Bourg St. Andéol (Ardèche).



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

